ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻՆ ԱՌԸՆԹԵՐ
ՄԱՇՏՈՑԻ ԱՆՎԱՆ ՀԻՆ ՁԵՌԱԳՐԵՐԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ—«ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ»
ԲԱՆԲԵՐ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԻ
ԵՐԵՎԱՆ № 10 1971

ԱՐՄԻՆԵ ՔՅՈՇԿԵՐՅԱՆ

# ԳՐԻԳՈՐ ՆԱՐԵԿԱՑՈՒ ԳԱՆՁԵՐՆ ՈՒ ԳԱՆՁԱՐԱՆՆԵՐԻ ՍԿԶԲՆԱՎՈՐՈՒՄԸ

Հայ միջնադարյան գրականության մեջ ուրույն տեղ են գրավում Գանձարան կոչված ժողովածուները, որոնք բովանդակում են յուրատեսակ հոգևոր բանաստեղծություններ՝ գանձեր, ինչպես նաև տաղեր, մեղեդիներ ու հորդորակներ: Այդ ժողովածուները, որոնք օգտագործվել են եկեղեցական տոների ժամանակ, իրենց ձևով և բովանդակությամբ տարբերվում են մինչ այդ մեծ տարածում գտած Շարակնոցներից: Մեզ հասած Գանձարանների հնագույն նմուշները պատկանում են XIII դարին, սակայն շատ գանձեր հայտնի են ավելի վաղ շրջանից՝ ընդհուպ մինչև X դ.: Այդ ժամանակաշրջանում հայ իրականության մեջ տեղի ունեցող քաղաքական իրադարձությունների հետևանքով ժողովրդի համար ապահովվել էր համեմատաբար խաղաղ դրություն: Նման պայմաններում որոշ վերելք էր ապրում մշակույթը: Արվեստի, ինչպես և գրականության բնագավառում ստեղծվում էին ժամանակի ոգին ու պահանջներն արտացոլող նոր գործեր, որոնց թվին են պատկանում նաև գանձերը:

Գանձերի ժողովածուները բաժանվում են հիմնականում երկու խմբի՝ հնագույն շրջանին պատկանողներ (մինչև XIV դ. վերջը) և նրանցից որոշակիորեն տարբերվող՝ հետագա դարերի ժողովածուներ:

Գանձարաններն ունեցել են բավական լայն տարածում: Այդ է վկայում նրանցից մեզ հասած շոշափելի քանակը: Մաշտոցյան մատենադարանում նրանց թիվը հասնում է մոտ 200-ի: Կան բազմաթիվ օրինակներ նաև այլ վայրերում գտնվող հայերեն ձեռագրերի հավաքածուներում: Երբեմն, հատվածաբար, նրանք պատահում են զանազան ժողովածուներում (Մաշտոց, Ճաշոց և այլն):

Տպագիր լիարժեք Գանձարաններ ընդհանրապես մեզ հայտնի չեն: Կան փոքր ծավալով ու խղճուկ բովանդակությամբ լույս տեսած Գանձարաններ, որոնք շատ են տարբերվում ձեռագիր ժողովածուներից, և հազիվ թե հնարավոր լինի նրանց միջոցով գեթ մոտավոր պատկերացում կազմել իսկական Գանձարանների ու գանձերի մասին: Դրանցից մեզ հայտնի առաջին փոքրիկ ժողովածուն լույս է տեսել 1739 թվականին Կ. Պոլսում[1], որին հաջորդել են այլ հրատարակություններ:

Գանձարանների բավական ընդարձակ մի ցուցակ է կազմել Մեսրոպ Տեր-Մովսիսյանը՝ ժամանակագրական կարգով ներկայացնելով իրեն հայտնի բոլոր Գանձարան-ժողովածուները, սկսելով պահպանված հնագույն օրինա-

1 Փոքրիկ գանձարան, Կ. Պոլիս, 1739:

կից։ Այդ անտիպ ցուցակում, որը գտնվում է Մաշտոցի անվան Մատենադարանում, ձեռագրերի նկարագրությունից ու հիշատակարաններից բացի, երբեմն կան օգտակար նշումներ՝ առանձին Գանձարանների բովանդակության վերաբերյալ։ Ավելի մոտ ժամանակներում Գանձարաններով հետաքրքրվել է Լ. Խաչիկյանը և կազմել Մատենադարանի 7 Գանձարանների բոլոր նյութերի այբբենական ցուցակը, տալով յուրաքանչյուրի վերնագիրն ու սկզբնատողը, հարկ եղած դեպքում նշելով էական տարբերությունները։ Այս ցուցակի ընդգրկած ձեռագրերը պատկանում են 15-րդ ու հետագա դարերին և օգտակար ուղեցույց են երկրորդ խմբի ժողովածուներով զբաղվողների համար։ Հին շրջանի Գանձարաններում հանդիպող որոշ գանձեր գրավել են Ն. Պողարյանի (Ծովական) ուշադրությունը և հրատարակվել առանձին կամ Երուսաղեմի Ձեռագրերի իր կազմած ցուցակում։

Գանձերի մասին բանասիրական լուրջ հետազոտություններ բացակայում են։ Առաջին անգամ դրանց անդրադարձել է բանասեր Մ. Պոտուրյանը երկու փոքր հոդվածներով, որոնցում տվել է ընդհանուր, սեղմ տեղեկություններ, օրինակ՝ «Գանձ կկոչվին այն տաղաչափյալ գրությունքը, որոնք սուրբ մը կամ տոն մը կներբողեն և ...պատմական համառոտ բովանդակություն մ՚ ունին իրենց մեջ։ Գանձերը ընդհանրապես տաղաչափյալ են և հանգավոր»[2]։ Հետագայում այդ ստեղծագործությունների ուսումնասիրության անհրաժեշտությունը նշում է Գ. Հովսեփյանը՝ Մխ. Այրիվանեցու երկու նորահայտ գանձերի առիթով իր գրած աշխատության մեջ. «Հոգևոր երգերի այդ տեսակը ծագել է սկսում 10-րդ դարում և ընդարձակ չափերի հասնում հատկապես 13—14-րդ դարերում... Գր. Նարեկացու, Ն. Շնորհալու հետ նաև Հովհ. Գառնեցի, Վարդան, Մխ. Այրիվանեցի, Խաչատուր Կեչառեցի... ձգել են իրենց արժեքավոր և անարժեք լումաները մեր հոգևոր գրականության այդ ճյուղի գանձանակի մեջ, թեև նրանց ուսումնասիրությունը կօգներ և մեր միջնադարյան բանաստեղծության հասկացողության։ Նրանք կարևոր դեր են կատարել մեր անցյալում, կապված լինելով տերունական և սրբոց տոների և եկեղեցական արարողությունների հետ»[3]։

Գանձերի ու Գանձարանների մասին եղել են նաև այլ ակնարկներ, որոնք կրում են հիմնականում մասնակի ու պատահական բնույթ։

Կամենալով օգտակար լինել Գանձարան ժողովածուների ամբողջական ուսումնասիրության գործին, մենք առայժմ սահմանափակվել ենք առաջին կամ հնագույն շրջանի ժողովածուներով, որոնց հետազոտությունն ունի առաջնահերթ նշանակություն։

Գանձերն, ինչպես նշվեց, հոգևոր բանաստեղծություններ են՝ նվիրված եկեղեցական տոներին, սրբերին ու մարտիրոսներին։ Հնագույն շրջանում նրանք գերազանցապես անհանգ են, իսկ մեծ մասին հատուկ է ծայրակապը (ակրոստիքոս)՝ կազմված հաճախ հեղինակի անունով։ Խաղարկված և եկեղեցական արարողությունների ժամանակ երգվող այդ բանաստեղծություններն ունեն որոշակի կառուցվածք ու հաճախ կազմված են երկարաշունչ տներից, որոնցից

---

2 Մ. Պոտուրյան, Միջին դարու հայ կրոնական բանաստեղծություն («Բազմավեպ», 1905, էջ 556—559)։ Տե՛ս նաև՝ Հայ հանդեսներ («Բազմավեպ», 1906, էջ 94)։

3 Փ. Հովսեփյան, Մխիթար Այրիվանեցի, նորագյուտ արձանագրություն և երգեր, Երուսաղեմ, 1931, էջ 5։

յուրաքանչյուրն ունի «ազաչեմք» բառով վերջացող կրկնակ: Պատմողական-փառաբանական բնույթի այդ երկերի հատկապես վերջին մասերն իրենց բովանդակությամբ անփոփոխ են: Այստեղ նախ հիշատակվում են ժողովրդի տարբեր խավերի ներկայացուցիչները. համապատասխան տունը սովորական կրկնակի փոխարեն ավարտվում է գրեթե միշտ անփոփոխ երկու պարբերությամբ, որոնք սկսվում են «Եւ ես ասաւել...» ու «Զանձինս մեր և զմիմեանս...» բառերով: Սրանց հաջորդում է սրբերի բարեխոսությունը. գանձն ավարտվում է «Եւ այժմ ողորմեաց մեզ, տէր Աստուած մեր, ըստ մեծի ողորմութեան քում» պարտադիր վերջաբանով:

Գանձերը կոչվել են նաև քարոզ և այդպես են պատահում հատկապես վաղ շրջանի ձեռագրերում: Իրենց կառուցվածքային որոշ առանձնահատկություններով նրանք մասնակի նմանություն ունեն այն քարոզների հետ, որոնք իրենցից ներկայացնում են հնում եկեղեցում օգտագործված խրատական բնույթի ընթերցվածներ՝ ընդհանրապես փոքր ու անկայուն ծավալով: Գանձերի ու նշված այս քարոզների առնչության հարցը կարևոր է և արժանի հատուկ ուշադրության: Անհրաժեշտ է նշել, որ գանձերը, քարոզների, ինչպես նաև շարականների, ներբողների ու աղոթքների հետ ունեցած ընդհանրությամբ հանդերձ, բոլորովին նոր որակի ստեղծագործություններ են:

Գանձերի անդրանիկ նմուշների հեղինակը համարվում է Գրիգոր Նարեկացին, որի գանձ-քարոզներից մինչև վերջերս հայտնի են եղել երեքը: Սրանք բոլորն էլ սկսվում են «գանձ» բառով: Այստեղից էլ՝ այդ յուրատեսակ քարոզների «գանձ» անվանումը: Հայկազյան բառարանում կարդում ենք. «Գանձ կոչին երգք կամ քարոզք առեալ ի սկզբնաւորութենէ երգոց Նարեկացւոյն. գանձ լուսոյ, գանձ բաղձալի, և այլն»:

Գանձարան ժողովածուներում գանձերից բացի պատահում են նաև հոգևոր տաղեր, մեղեդիներ, հորդորակներ, որոնք ծառայում են միևնույն նպատակին: Սրանք ծավալով համեմատաբար փոքր են ու տարբերվում են գանձերից իրենց բարձր արվեստով, կառուցվածքով, ճոխ խազագրումով[4]:

Մեզ հասած Գանձարանները միատարր չեն. ժամանակի ընթացքում նրանք անընդհատ փոփոխվել, հարստացել են նոր գանձերով ու տաղերով: Հնագույն ժողովածուները, որոնք հասնում են մինչև XIV դ. վերջը, պահպանված են խիստ սակավ նմուշներով. առավել հին գանձերը համեմատաբար անաղարտ վիճակում են: Այս ժողովածուներում գանձերը մեծ մասամբ անհանգ բանաստեղծություններ են և, չնչին բացառությամբ, կոչվում են քարոզ: XIV դ. վերջից սկսվում են երկրորդ խմբի Գանձարանները, որոնք Գր. Խլաթեցու միջամտությամբ ենթարկվել են որոշակի խմբագրման: Այս խմբին է պատկանում մեզ հասած Գանձարանների մեծագույն մասը: Այստեղ գանձերը, որոնք նախկին դեպքերում են կոչվում քարոզ, սովորաբար հանգավորված են: Նկատելի է նաև, որ հնագույն մի շարք անհանգ գանձերի փոխարեն այստեղ զգալի տեղ են զբաղեցնում Գր. Խլաթեցու ստեղծագործությունները:

Գանձարաններում գանձերի, տաղերի, մեղեդիների ու հորդորակների հաջորդականությունը ենթարկված է եկեղեցական տոների հերթականության ըն-

---

4 Դրանք էլ հատուկ քննության են պահանջում՝ որպես գանձարանային հատուկ կարգի միավորներ:

ցուցված սկզբունքին, որն ընդհանուր առմամբ անխախտ է։ Նյութերի դասավորությունը, սակայն, միանման չէ. ընդ որում, պահպանվում է Գանձարանների երեք ենթախումբ և՛ առաջին, և՛ երկրորդ խմբի ժողովածուների համար։

Գանձարանների առաջին ու ամենապարզ տեսակն այն է, երբ ժողովածուն բաղկացած է բացառապես գանձերից։ Այս տեսակետից հետաքրքրական է Մատենադարանի № 4068 ձեռագիրը, որի գրչության վայրի ու ժամանակի մասին տվյալներ չունենք։ Պահպանված է սակայն ձեռագրի վերջին ստացող Կիրակոսի 1389 թ. հիշատակարանը, հետևապես գանձարանը պետք է ընդօրինակված լինի դրանից առաջ[5]։ Ձեռագիրը, որ բովանդակում է 76 գանձ, թերի է. վերջից պակասում են թերթեր. այսուհանդերձ, եկեղեցական տոների շարքն ամբողջացված է[6]։ Այստեղ կան 18 գանձասացներ, որոնցից Գրիգոր Նարեկացու, Մխ. Այրիվանեցու և Խաչատուրի գանձերն իրենց քանակով գերազանցում են մյուսներին։ Ձեռագրում կան հետագայում հազվադեպ հանդիպող և կամ իսպառ մոռացված հեղինակների գործեր, որոնք հնագույն շրջանի գանձերի ուսումնասիրության համար շատ կարևոր են։

Գանձարանների երկրորդ տեսակը ներկայանում է երկու առանձին մասերով. Գանձարան՝ բաղկացած զուտ գանձերից, և Տաղարան՝ եկեղեցական նույն տոներին վերաբերող հոգևոր տաղերով, մեղեդիներով, հորդորակներով։ Այդպիսին է Երուսաղեմի № 231 Գանձգիրք-Տաղարանը։ 541 թերթերից բաղկացած թղթյա այս ձեռագիրն անթվական է։ Հայտնի չէ նաև գրչության վայրը։ Առաջին մասը՝ Գանձարանը, որտեղ կան 95 գանձեր, ընդօրինակել է Հակոբը. իսկ Տաղարանի գրիչն է Լևոն դպիրը։ Ն. Պողարյանը, շնորհիվ հիշատակարանում պահպանված գրիչների ու ստացողի անունների, ձեռագրի գրչության ժամանակը համարում է 1404—1411 թթ., իսկ վայրը՝ Երուսաղեմ[7]։ Բոլոր գանձերը, բացի մեկից, կոչվում են քարոզ։ Այստեղ հանդես են գալիս 17 գանձասացներ, որոնց թվում Մկրտիչի, Մխ. Այրիվանեցու, Գրիգոր Նարեկացու և Խաչատուրի հաճախակի հանդիպող անուններից բացի, աչքի են ընկնում նաև Գևորգն ու Մովսեսը։ Հին շրջանի այս երկու հեղինակների գանձերն ունեն թվական բացարձակ գերակշռություն նույն խմբին պատկանող՝ Փարիզի Ազգային մատենադարանի հայկական հավաքածուի № 79 (նախկին № 50) ձեռագրում[8], որը մեզ հայտնի հնագույն Գանձարան-Տաղարանն է։

Գանձարանների այս երկու տեսակներից շատ չեն տարբերվում այն ժողովածուները, որոնք բաղկացած են գանձերից և ընդամենը մի քանի տաղերից, որոնք զետեղված են ձեռագրի վերջում (գանձերից հետո)։ Այդպիսին է Մատենադարանի Գանձարաններից հնագույնը՝ № 2061-ը, ընդօրինակված 1310 թ. Եկեղյաց գավառի Տիրաշենի վանքում, «ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և կենսաբեր սուրբ Նշանիս», Կարապետ կրոնավորի ձեռքով։ Այս փոքրիկ ձե-

5 Ձեռ. № 4068, թերթ 270բ. «Զվերջին ստացող զրոց զպարոն Կիրակոսն յիշեսջիք ի Տէր, որ ստացաւ զսա ի հալալ արդեանց իւրոց ի յիշատակ իւր և ծնողաց ի թուին ՊԼԸ» (1389)։

6 Ձեռագրում վերջին գանձն ունի ՀԴ (74) թվահամարը, որովհետև երկու գանձ պատահաբար չեն համարակալվել։ Վերջում պահպանվել է նաև մի այլ գանձի հատված։

7 Ն. Պողարյան, Մայր ցուցակ ձեռագրաց սրբոց Յակոբեանց, հատ. Ա, Երուսաղեմ, 1966, էջ 628—637։

8 Ձեռագրի վերջերս ստացված մանրաժապավենը հնարավորություն է տալիս մանրամասն ծանոթանալու այդ կարևոր հուշարձանին, որին անդրադառնալու ենք առանձին։

ռագիրը բովանդակում է երկու տասնյակ գանձ[9], որոնք բոլորն էլ անհանգ են և կոչվում են քարոզ։ Նարեկացու գանձերն այստեղ իրենց քանակով գերազանցում են բոլորին։ Ձեռագիրը, հավանաբար, ընդօրինակվել է բավական հին օրինակից։ Վերջում գտնվում են վեց տաղեր, որոնք որոշակի դասավորություն չունեն և թողնում են պատահական հավելվածի տպավորություն։ Նման ժողովածուները դեռևս չեն կարող դիտվել իբրև Գանձարանների առանձին ենթախումբ, որովհետև մեծ մասամբ թերի են, առհասարակ տաղերի դասավորության որոշակի սկզբունք չունեն և կարող են նոր փաստերով լուսաբանվելու։

Նյութերի բովանդակության այլ դասավորություն ունի Գանձարանների երրորդ տեսակը։ Այստեղ գանձերից յուրաքանչյուրին անմիջապես կցված է համապատասխան մեկ կամ մի քանի տաղ, մեղեդի ու հորդորակ։ Այդպիսին է Մատենադարանի № 7785 ձեռագիրը, որի գրչության վայրի, ժամանակի վերաբերյալ հիշատակություն չի պահպանվել։ Այստեղ շատ հաճախ է հիշվում գրիչը՝ Ավետիսի որդի Հովհաննեսը, ինչպես նաև ստացողը՝ «ճշմարտախոհ, հանճարեղ» վարդապետ Հովհաննես կրոնավոր Սեբաստացին, որ էր «աթոռակալն ամենայն հիւսիսական կողմանց»[10]։ Իսկ դրանք օգնում են ձեռագրի ընդօրինակման մոտավոր ժամանակը որոշելուն։ Այսպես. հայտնի է, որ 1349—1368 թվականներին Հովհ. Սեբաստացու պատվերով Ղրիմի Սուրխաթ քաղաքում ժամանակի հայտնի գրիչ Նատերի որդիներ Ստեփաննոսն ու Ավետիսը ընդօրինակել են երեք ձեռագիր։ Մատենադարանում պահվում են ևս երկու ձեռագրեր՝ ընդօրինակված նույն Հովհաննես Սեբաստացու համար՝ 1371 և 1377 թվականներին, հավանաբար Ղրիմում, նույն Ավետիսի որդի Հովհաննեսի ձեռքով[11]։

Մեր հետաքրքրող № 7785 Գանձարանը, որն ընդօրինակել է Ավետիսի որդի Հովհաննեսը, գրչությամբ շատ նման է վերոնշյալ ձեռագրերից վերջին երկուսին։ Հետևապես, հավանական է, որ գրիչ Նատերի թոռ Հովհաննեսն է ընդօրինակել № 7785 ձեռագիրը՝ 1370—1380-ական թվականներին Սուրխաթում.

Գանձարանը (ձեռ. № 7785) բովանդակում է 80 գանձ։ Բոլորը, բացի մեկից, կոչվում են քարոզ, և յուրաքանչյուրին կցված է մեկ կամ մի քանի տաղ։ Հեղինակների թիվը այստեղ հասնում է 17-ի, ընդ որում, դրանք հիմնականում Երուսաղեմի № 231 Գանձարանում պատահած անուններն են։ Այստեղ նույնպես, համեմատաբար, շատ են Մխ. Այրիվանեցու, Գրիգոր Նարեկացու, ինչպես նաև Մովսեսի ու Գևորգի գանձերը։ Գանձարանն ամբողջական է, վերջում իբրև հավելված կան երկու գանձեր, որոնք քայքայված ու պակասող թերթերի պատճառով թերի են։ Իրենց գեղարվեստական արժանիքներով առանձնապես աչքի

---

9 Բուն Գանձարանը կազմված է 21 գանձից, դրանցից մեկը, որ գտնվում է վերջում կցված տաղերի թվում, նվիրված է Գր. Լուսավորչին։ Բացի այդ, ձեռագրի 1ա և 117ա թերթերում այլ գրչությամբ հետագայում ավելացված են Խաչատուրի երկու գանձերը («Գանձ մարտիրոսաց», սկիզբը՝ թերի և «Գանձ Աւետեաց Աստուածածնին»)։ Սրանք բուն Գանձարանի մասը չեն կազմում։

10 XIV դ. երկրորդ կեսում Ղրիմի Սուրխաթ քաղաքում գրված շատ ձեռագրերի հիշատակարաններում հանդիպում է Հովհ. Սեբաստացու անունը՝ իբրև Ղրիմի աթոռակալի, Սուրխաթի Ս. Խաչ (Ս. Նշան) եկեղեցու կառուցողի և ձեռագրերի պատվիրատուի (տե՛ս Լ. Խաչիկյան, ԺԴ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ, Երևան, 1950, էջ 348, 349, 358, 370, 380—381, 401, 410, 421, 485—487 և այլն)։

11 Ձեռ. № 7449, ճաշոց։ Ձեռ. № 7473, Մեկնութիւն կաթողիկեայց թղթոց Սարգսի Շնորհալւոյ (տե՛ս Լ. Խաչիկյան, նշվ. աշխ., էջ 499 և 524)։

չընկնող այդ երկու ստեղծագործությունները պատկանում են ձեռագրի ստացող Հովհ. Սեբաստացու գրչին և նրա անունով մեզ հայտնի միակ գանձերն են[12]։

* * *

Հնագույն գանձատաղների ու գանձերի հետազոտությունը, բնականաբար, պետք էր սկսել այդ երկերի առաջին հեղինակ Գրիգոր Նարեկացուց։ Վերջինիս կյանքն ու գրական վաստակը ներկայացնող սկզբնաղբյուրներն ու ուսումնասիրությունները սկզբից անվերապահորեն նրան վերագրել են երեք գանձ։ Առաջին անգամ դրանք լույս են տեսել 1700 թ. Կ. Պոլսում «Մատեան Ողբերգութեան» երկի երկրորդ հրատարակության մեջ, ապա նաև հետագա այլ հրատարակություններում։ 1840 թ. Վենետիկում լույս տեսած Նարեկացու երկերի միհատորյակում կրկին հանդիպում ենք նշված գանձերին[13]։ Այս քանակը մնում է անփոփոխ մինչև 1948 թ., երբ Ն. Ծովականը «Սիոն» ամսագրում լույս է ընծայում հեղինակի անունով մի նոր գանձ, իսկ մի քանի տարի հետո՝ 1953 թ., Երուսաղեմի Ձեռագրերի ցուցակի Բ հատորում նա Նարեկացուն է վերագրում ևս երկու գանձ ու հրատարակում ամբողջությամբ։

Գրիգոր Նարեկացու գանձերի թիվը, սակայն, այս վերջով չի սպառվում։ Մաշտոցյան մատենադարանի հին շրջանի մի քանի ձեռագրերում, վերոհիշյալներից բացի, հանդիպել ենք նաև երեք նոր նմուշների, որոնք, որքան մեզ հայտնի է, առայժմ մնում են անտիպ։ Հեղինակի այս ստեղծագործություններից մի քանիսի խորագրերը բերված են Հայկազյան բառարանում։ Այստեղ «բարդ» բառի դիմաց (որն, ինչպես գիտենք, գործածվել է նաև «գանձ» իմաստով) նշված են Նարեկացու հինգ գանձերը։ Սրանցից երեքը տպագրված են, իսկ երկուսը հանդիպում են Ն. Պողարյանի հրատարակածներում և ուրիշ ձեռագրերում։ Նարեկացուն պատկանող անտիպ գանձերի մասին ակնարկում է նաև Աս. Մնացականյանը 1946 թ. գրած իր մի հոդվածում[14], որտեղ խոսում է Մատենադարանի ձեռագրերից մեկում իրեն պատահած երեք նոր նմուշների մասին։ Սրանք № 2061 ձեռագրում զետեղված այն երեք գանձերն են, որոնք հանդիպում են Ն. Պողարյանի մոտ, ինչպես և անտիպներում, ուստի Նարեկացու գանձերի ընդհանուր թիվն առայժմ հասնում է իննի։

Ներկայացնում ենք այդ գանձերի ցանկը՝ վերնագրերով ու սկզբնատողերով, նախ նշելով վաղուց տպագրված երեք գանձերը (1—3), ապա՝ Ն. Պողարյանի հրատարակածները (4—6), իսկ վերջում՝ անտիպները (7—9)։

---

12 Գանձերից առաջինի խորագիրն ու սկիզբը չեն պահպանվել, սակայն ստորին լուսանցներում կան վերնագրային նշումներ՝ «Աստուածայայտնութեան ծննդեան... ասացեալ ի Յովհաննիսէ աբեղայէ ամենայն հի[սիսական կողմանց]», «Յովհաննիսէ աբեղայէ, Սեբաստացւոյ» (թերթ 557ա—562ա)։ Ծայրակապն է. «[Յով]հաննիսի է բանս»։ Երկրորդ գանձն ունի խորագիր՝ «Ներբն Յովհաննիսի աբեղայի ասեալ ի սուրբ և յամենօրհնեալն Հայրն և ի քաջ սպառազինեալն և յանպարտելի ախոյեան հաւատոյ՝ ի մեծն Աթանաս Աղեքսանդրու և ի կոթողեալ միան Կ[իւր]ղոս Երուսաղէմի» (թերթ 562բ)։ Ծայրակապն է. «Յո[վհան]իս[ի] է բ[անս]»։

13 Բանասեր Մ. Պոտուրյանը Նարեկացուն չի ընդունում այդ գանձերի հեղինակ («Բազմավէպ», 1906, էջ 94)՝ հենվելով Ա. Չոպանյանի մի հոդվածի վրա («Անահիտ», 1905, № 10—11, էջ 198), որտեղ Նարեկացու տաղերի մասին խոսելիս հեղինակն ասում է, որ դրանք Նարեկացունը չեն ու սխալմամբ «տաղ» բառի փոխարեն դրում է «գանձ»։ Հետագայում Ա. Չոպանյանն ինքն անդրադառնալով այդ շփոթությանը, ուղղում է իրեն («Անահիտ», 1907, № 3—4—5, էջ 49)։

14 Աս. Մնացականյան, Երկրի մի նորահայտ բանաստեղծությունը, «Տեղեկագիր» ՀՍՍՀ ԳԱ (հաս. գիտ.), 1946, № 2—3, էջ 79։

1. Գանձ ի զալուստ Սուրբ Հոգւոյն—*Գանձ լուսոյ փառակից Որդւոյ...*

2. Գանձ ի սուրբ եկեղեցի—*Գանձ բազմալի բարութեան մեծին...*

3. Գանձ ի սուրբ խաչն աստուածընկալ—*Գանձ անքնին, ծածկեալ մեծութիւն...*

4. Գրիգոր Նարեկացւոյ Տաղ ասացեալ ի փոխումն ամենօրհնեալ սուրբ Աստուածածնին—*Գանձ անսպական ծածկեալ մեծութեամբ, գերահրաշ և անարատ մաքրութեամբ զարդարեալ...*

5. Տաղ վարդավառին—*Գանձ անպատում և անճառելի...*

6. Այլ Տաղ ծննդի վեցերորդ աւուր—*Գանձ անսպական ծածկեալ մեծութիւն, ահաւոր, անհիմանալի խորհուրդ...*

7. Տաղ համաւրէն սուրբ առաքելոցն—*Գանձ փառաց խորհրդոյ...*

8. Տաղ սրբոյն Գրիգորի Հայոց Լուսաւորչի, Գրիգորի ասացեալ—*Գերահրաշ ցնծութեամբ բերկրեալ...*

9. Տաղ Յովհաննու Մկրտչի Գրիգորի Նարեկացու ասացեալ—*Իսկապէս անըսկզբնացուցիչ...*

*Այժմ մի քանի խոսք այդ գանձերի մասին: Տպագրությամբ վաղուց հայտնի առաջին երեքը նվիրված են Ս. Հոգուն, Եկեղեցուն և Խաչին[15], սկսվում են «գանձ» բառով և ունեն «Գրիգորի երգ» ծայրակապ: Դրանք միաժամանակ ունեցել են շատ մեկնություններ, որոնց մի մասը գալիս է XII—XIV դարերից: Ուշ շրջանից ուշագրավ են Հ. Նալյանի[16] և Գ. Ավետիքյանի[17] մեկնությունները: Պետք է նշել, սակայն, որ Գրիգոր Նարեկացու այս երեք գանձերը անմասն չեն մնացել ընդհանրապես գանձերի հանդեպ եղած անտարբերությունից. բանասիրությունը հաճախ բավարարվել է նրանց սոսկ թվարկումով:*

*Հաջորդ երեք գանձերը, որոնք հայտնի են դարձել Ն. Ծովականի, նվիրված են Աստվածածնի Վերափոխման, Վարդավառի ու Ծննդյան տոներին: Առաջինը գտնվում է Երուսաղեմի № 265 ձեռագրում և հրատարակված է ամբողջությամբ[18]: Նույնը հանդիպում է Մատենադարանի № 4068 (թերթ 310ա) և № 7785 (թերթ 406ա) ձեռագրերում, ինչպես նաև Փարիզի № 79 Գանձարանում (թերթ 190բ): Բոլոր օրինակները, բացի վերջինից, վերնագրում պահպանել են հեղինակի անունը: Բացի այդ, Հայկազյան բառարանում «քարոզ» բառի դիմաց նշված Նարեկացու հինգ գանձերի թվում գտնվում է «Ի փոխումն կուսին» քարոզը, որն անկասկած Աստվածածնի Վերափոխման գանձն է: Այս գանձի հավանական գոյության մասին մի ակնարկ ունի նաև Գ. Ավետիքյանը[19]:*

---

15 Գրիգոր Նարեկացի. *Մատենագրութիւնք, Վենետիկ, 1840, էջ 455—463:*

16 Հ. Նալյան, *Մեկնութիւն աղօթից և ներբողինաց սրբոյն Գրիգորի Նարեկացւոյ, Կ. Պոլիս, 1745, էջ 1013—1051:*

17 Գրիգոր Նարեկացի. *Երկրորդ մատեան ճառից, Վենետիկ, 1827, էջ 233—238, 241—247, 250—253:*

18 *«Սիոն», Երուսաղեմ, 1948, էջ 213: Տե՛ս նաև* Ն. Պողարյան. *Նշվ. աշխ. հ. Բ, Երուսաղեմ, 1967, էջ 59:*

19 Գրիգոր Նարեկացի. *Երկրորդ մատեան ճառից, էջ 107—108: «Ի գանձ սրբոյ Աստուածածնին. յաղագս այսր գանձի թէև չունիմք հաւաստել թէ գոյց ընդ ներբողենին իցէ յօրինեալ. Բայց զի յաւելու աստ զինի՝* զերգագրութիւն սակաւամասնեայ այսր գովեստի. *առաւել զմեծ ներբողեանն յայտ առնէ, քան թէ զամեալ բանսն՝ որ աստ և աղաչելն ի կարգին զի անկորուստ պահեսցին իբրև արձան գրեալքն իւր և իմաստքն, ընդարձակ ճառի է յայտարարութիւն: Մանաւանդ թէ ոչ իբրև քարոզական Գանձ թուի արարեալ զայս, քանզի ո՛չ* գանձ *բառիւ սկսանի, և ոչ զաւարտումն առնէ հայցուածովք վասն զանազան կարգաց, զոր օրինակ առնէ յայլ երիս Գանձսն:*

Վարդավառի ու Ծննդյան տոներին նվիրված Նարեկացու երկու գանձերը, որոնք Ն. Ծովականն ամբողջությամբ հրատարակել է, գտնվում են Երուսաղեմի № 231 Գանձարան-Տաղարանում[20]։ Սրանք նույնպես պատահում են Մատենադարանի ձեռագրերում։ Առաջինը գտնվում է №№ 4068 (թերթ 129 բ) և 7785 (թերթ 370ա), իսկ մյուսը՝ №№ 4068 (թերթ 9ա), 7785 (թերթ 30ա) և 2061 (թերթ 22ա) Գանձարաններում ու Փարիզի № 79 (թերթ 16ա) ձեռագրում։ Վարդավառի գանձը Մատենադարանի օրինակների խորագրում ունի «Ի Գրիգորէ Նարեկացւոյ» բառերը, մինչդեռ Ծննդյան գանձի բոլոր օրինակներում հեղինակի անունը պահպանված է միայն ծայրակապի մեջ՝ «Գրիգորի երգ» ձևով։ Ն. Ծովականն այս երկու նմուշները վերագրում է Նարեկացուն, ելնելով նաև հեղինակի մյուս գանձերի հետ նրանց ունեցած կառուցվածքային, ոճական ընդհանրություններից, «գանձ» բառով սկսվելու սովորությունից և այլ առանձնահատկություններից։

Նարեկացու գանձերից վերջին երեքը, որոնք դեռ անտիպ են, նվիրված են առաքյալներին, Գր. Լուսավորչին և Հովհ. Մկրտչին։ Առաջինը գտնվում է Մատենադարանի № 4068 (թերթ 195բ) և Փարիզի № 79 (թ. 292ա) ձեռագրերում. ընդ որում, Փարիզի ձեռագրի վերնագրում պահպանված է Գրիգորի անունը՝ «Այլ քարոզ համաւրէն առաքելոց Գրիգորի վարդապետի»։ Առաքյալներին նվիրված այս գանձ-քարոզը, որն սկսվում է «գանձ» բառով և ունի «Գրիգորի երգ» ծայրակապ ու նման է նախորդներին իր մյուս առանձնահատկություններով, անշուշտ, Նարեկացու անունով հիշված այն նույն «Քարոզ առաքելոց»-ը պիտի լինի, որի մասին ակնարկում է Հայկազյան բառարանը։

Նարեկացու անտիպ գանձերից երկուսը տարբերվում են բոլոր նախորդներից նրանով, որ չեն սկսվում «գանձ» բառով, իսկ «Գրիգորի երգ» սովորական ծայրակապի փոխարեն ունեն բառերի այլ համադրություն՝ «Գրիգորի գանձ» և «ի ձայնն երգ»։ Այսուհանդերձ, մերթ Գրիգոր վարդապետի, մերթ Գրիգոր Նարեկացու անունով հանդես եկող այդ գանձերը, որոնք լեզվա-ոճական ու այլ հատկանիշներով նմանվում են նախորդներին, հակված ենք ընդունելու իբրև Նարեկացու գրչին պատկանող ստեղծագործություններ։ Դրա օգտին է վկայում հետևյալ հանգամանքը. Գանձարանների հնագույն օրինակները, որոնցում հանդիպում են Նարեկացու գանձերը, բնորոշ են նրանով, որ գանձերն առհասարակ այնտեղ կամ անհեղինակ են, առանց իմաստավոր ծայրակապի[21], կամ ունեն ծայրակապ և վերջինս հուշում է հեղինակի անունը. ընդ որում, հեղինակային այդ գանձերի թվում, Նարեկացուց բացի այլ Գրիգոր մեզ հայտնի չէ։ Ուշագրավ է նաև մի այլ փաստ. Նարեկացու գանձերը, որոնք առավել հին բոլոր Գանձարաններում հանդիպում են և կազմում շղթայիկի բանակ, ի տարբերություն հեղինակի տաղերի ու մեղեդիների, հետագայում այլևս չեն պատահում։ Նրանք դուրս են մնացել Գանձարան-ժողովածուներից շատ ավելի վաղ, քան հին շրջանի մյուս հեղինակների գանձերը։ Այդպես էլ, նշված երկու անտիպ նմուշները պատահում են միայն այն ձեռագրերում, որտեղ Նարեկացու մյուս գանձերն են։

20 Ն. Պողարյան, նշվ. աշխ., հ. Բ, Երուսաղեմ, 1953, էջ 242 և 246, նաև՝ հ. Ա, Երուսաղեմ, 1966, էջ 628—637։

21 Ձեռագրերում հանդիպում է անհեղինակ մի գանձ՝ նվիրված Պետրոս և Պողոս առաքյալներին «Գնդին սրբոց» ծայրակապով։ Առայժմ նշված գանձը Նարեկացուն վերագրելու բավարար հիմքեր չունենք, թեև որոշ տվյալներ հիմք են տալիս նման ենթադրության։

Այսպիսով, Գր. Լուսավորչին ու Հովհ. Մկրտչին նվիրված գանձերի Նարեկացուն պատկանելը մեզ տարակուսելի չի թվում և հեղինակի մեզ հայտնի գանձերի ցանկն ամբողջացնելու համար ներկայացնում ենք նաև այդ երկուսը։ Դրանցից առաջինը՝ նվիրված Գր. Լուսավորչին (ծայրակապն է՝ «Գրիգորի գանձ»), գտնվում է Մատենադարանի №№ 2061 (թերթ 120ա), 4068 (թերթ 70ա) և 7785 (թերթ 339բ) ձեռագրերում։ Առաջինի վերնագրում գրված է՝ «Գրիգորի ասացեալ». նման նշում կա նաև Փարիզի № 79 (թերթ 137ա) ձեռագրում՝ «Գրիգորի վարդապետի ասացեալ», իսկ Երուսաղեմի № 231 ձեռագրում, որտեղ դարձյալ հանդիպում ենք այս գանձին (թերթ 174ա), վերնագիրն է՝ «Քարոզ Լուսաւորչին, ասացեալ Նարեկացւոյ»։ Ն. Ծովականի ուշադրությունից այս գանձն, ըստ երևույթին, վրիպել է ծայրակապի և սկզբնատողի քիչ փոփոխված ձևի պատճառով։ Ծայրակապի «երգ» բառը փոխարինելով «գանձով», Նարեկացին դրանով իսկ, հավանաբար, փորձել է իր նորաստեղծ բանաստեղծություններին տալ համապատասխան անուն։ Խուսափելով «գանձ» բառով սկսելու կաշկանդող անհրաժեշտությունից, հեղինակը ծայրակապով, այնուամենայնիվ, հուշում է, որ այդ ստեղծագործությունները կոչվում են գանձ։ Այսպիսով, այդ անվանումը ոչ թե Նարեկացու «գանձ» բառով սկսվող քարոզների հիման վրա հետագայում կատարված ընդհանրացում է, այլ, կարող ենք ասել, սկիզբ է առել հեղինակից։

Մեր կարծիքով, ճիշտ չէ նաև բանասեր Մ. Պոտուրյանը, երբ, չընդունելով Նարեկացուն իբրև գանձագիր, «գանձ» բառն էլ համարում է օտարամուտ և ենթադրաբար կապում XII դ. հետ[22]։ Մ. Պոտուրյանին հայտնի է եղել Լուսավորչին նվիրված հիշյալ գանձը, բայց որովհետև ծայրակապում հիշված Գրիգորին նա համարում է XII դ. ապրած հեղինակ, ըստ այդմ էլ «գանձ» բառի բացատրությունը փորձում է հարմարեցնել իր տեսությանը։

Հաջորդ անտիպ գանձը նվիրված է Հովհ. Մկրտչին և գտնվում է Մատենադարանի №№ 2061 (թերթ 29ա), 7785 (թերթ 240բ), ինչպես նաև 4068 (թերթ 35բ) ձեռագրերում։ Բացի վերջինից, մյուսների վերնագրերում պահպանվել է հեղինակի անունը։ Ծայրակապն է «Ի ձայնն երգ», որտեղ ի դեմս «ձայն»-ի հեղինակը նկատի է ունեցել Հովհ. Մկրտչին։ «Ձայն» բառի իբրև Հովհաննես Մկրտչի համանիշ օգտագործումը հանդիպում է Ավետարանի շատ մեկնություններում, որոնք հիմք են ընդունում Եսայի մարգարեի «ձայն բարբառոյ յանապատի» խոսքերը։ Բացի այդ, Նարեկացին նշված գանձի երկրորդ տունն սկսում է հետևյալ նույնիմաստ տողերով.

Ձայնեցեր նախկին բնութեյցըն նախման զաշխարհս
Եւ ոռոշեցեր յաւետումն ուրախութեան տրտմեցելս դստեր Սիովնի:

Գանձի բովանդակությանը համապատասխանող ծայրակապի գործածությանն առաջին անգամ հանդիպում ենք Նարեկացու մոտ։ Նրան պատկանող նման այլ նմուշներ մեզ հայտնի չեն. հավանական է, սակայն, որ այդպիսիները եղել են, և հետագայի մի քանի գանձագիրների համար (օրինակ, Մխ. Այրիվանեցի) նման երևույթը եղել է բնորոշ, թեև մինչև վերջ էլ գերիշխել է հեղինակի անունով կազմված ծայրակապը, որի շնորհիվ պահպանվել են շատ գանձագիրների անունները։

---

22 Մ. Պոտուրյան. Հայ հանդեսներ («Բազմավեպ», 1906, էջ 94)։

Առայժմ այսքանով ավարտվում է Նարեկացու մեզ հայտնի գանձերի ցանկը, թեև բացառված չէ նոր նմուշներով այն լրացնելու հնարավորությունը։

Ինչպես գիտենք, գանձերն առհասարակ եկեղեցական արարողությունների ժամանակ երգվել են և, հավանական է, որ հաճախ դրանց եղանակավորողները հանդիսացել են հենց իրենք՝ հեղինակները։ Սրանք եղել են հոգևորականներ, որոնք ունեցել են նաև երաժշտական կրթություն, ուստի, բացառված չէ, որ Նարեկացին կարողանար ձայնագրել իր ստեղծագործությունները։ Այս առումով որոշ ակնարկներ կարող են վկայել հեղինակի՝ որպես նաև երգահան լինելու մասին։ Օրինակ, Հովհ. Մկրտչին նվիրված իր գանձի վերջում Նարեկացին գրում է.

Պաղատիմ առ մայրդ Աստուծոյ,
Երգարանս և երգիչս և բնաւ խմբեալս...

«Երգարան», ըստ Հայկազյան բառարանի, նշանակում է «երգող բանից կամ յօրինող երգոց, երաժիշտ»։ Ուստի, այստեղ «երգարանս» ասելով հեղինակը, ըստ երևույթին, նկատի ունի իրեն՝ որպես երգահանի։

* * *

Գրիգոր Նարեկացու գանձերը, ինչպես նշվեց, պատահում են հին շրջանի գրեթե բոլոր Գանձարաններում և, հետաքրքրական է, որ նրանք հանդես են գալիս ոչ եզակի նմուշներով։ Օրինակ, Մատենադարանի № 4068 ձեռագրում կան հեղինակի 9 գանձերը, № 7785-ում՝ 8-ը, № 2061-ում՝ 6-ը, Փարիզի № 79-ում՝ 7-ը և Երուսաղեմի № 231-ում՝ 6-ը։ Գիտենք նաև, որ Նարեկացին ունեցել է հոգևոր տաղեր ու մեղեդիներ։ Նրանց քանակը հասնում է ավելի քան երկու տասնյակի, որոնք առկա են ինչպես հին, այնպես էլ հետագայի շատ Գանձարան-Տաղարաններում։ Նշված հանգամանքը մտածել է տալիս, որ Նարեկացու գանձերը, ինչպես նաև տաղերն ու մեղեդիները, որոնք համապատասխանում էին եկեղեցական տոներին ու երգվում էին արարողությունների ժամանակ, սերտորեն առնչված են եղել և, հավանաբար, դեռ հեղինակի օրով և նրա կողմից, ամփոփված մի տեղ։

Այս տեսակետից ուշագրավ է Մատենադարանի № 7785 ձեռագիրը, որտեղ գտնվում է նշված ստեղծագործությունների մեծագույն մասը՝ 8 գանձ և 18 տաղ ու մեղեդի։ Դրանք հիմնականում վերաբերում են տերունական գլխավոր տոներին։ Այսպես, օրինակ, ձեռագրում տեղ են գտել Ծննդյան, Հոգեգալստյան, Եկեղեցու, Վարդավառի, Աստվածածնի Վերափոխման ու Խաչի տոներին նվիրված հեղինակի գանձերը և նույն տոներին (նաև ուրիշ տոների) վերաբերող նրա տաղերն ու մեղեդիները, որոնց շարքն առավել ամբողջական է։ Բացի այդ, ձեռագրում զետեղված են Նարեկացու նշված երկերից մի քանիսը, որոնց համապատասխան զուգահեռներին առայժմ չենք հանդիպել։ Այսինքն՝ կամ գանձն է առկա՝ առանց տաղի ու մեղեդու, և կամ տաղն ու մեղեդին՝ առանց գանձի։

Հայտնի է, որ Գանձարաններում, տերունական տոներին նվիրված միավորներից բացի, զգալի տեղ են զբաղեցնում զանազան սրբերին վերաբերող գանձերը, տաղերը, մեղեդիները և հորդորակները։ Հետաքրքրական է, որ Նարեկացու նշված երկերում տերունականների կողքին պահպանվել են (թեև փոքր քանակով) նաև առանձին սրբերի համար գրված նմուշներ, ինչպես, օրինակ՝ Գր. Լուսավորչին ու Հովհ. Մկրտչին նվիրված գանձերը և Քառասուն վկաներին ձոնված տաղը։

Այսպիսով, նշված փաստերը կրկին վկայում են, որ Նարեկացու մոտ արդեն կային Գանձարան-ժողովածուի կազմավորման անհրաժեշտ նախադրյալներ և հնարավոր է, որ հեղինակի այդ երգերն, իրենց ժամանակին ներկայացված լինեին առանձին փոքրիկ ժողովածուի տեսքով։ Վերջինիս մեջ նյութերի դասավորության կապակցությամբ մեզ ծանոթ հնագույն ձեռագրերը հուշում են երկու հնարավոր ձև։ Առաջին, երբ Գանձարանն ու Տաղարանը առանձին-առանձին են հանդես գալիս. երկրորդ. երբ գանձերը, տաղերն ու մեղեդիները, նաև հորդորակները անմիջապես զուգորդված են միմյանց հետ։

Նարեկացու նշված ստեղծագործությունների սերտ կապն ու փոխհարաբերությունը, որ ցայտուն կերպով արտահայտված են № 7785 ձեռագրում, հնարավորություն են տալիս ենթադրելու, որ Նարեկացու մոտ դրանք անմիջապես զուգորդված են եղել։ Նշված Գանձարանում հեղինակի գանձերից երեքին կցված են նրա համանուն տաղերը։ Այսպես. Նարեկացու Ծննդյան գանձին անմիջապես հաջորդում է Ծննդյան տոնին նվիրված նրա «էին աչոյ աչոյ...» տաղը, Ս. Հոգուն նվիրված գանձին՝ Ս. Հոգուն նվիրված «Յանկարծահնչեաց...» տաղը, իսկ եկեղեցու համար գրած գանձին հաջորդում են եկեղեցուն նվիրված երկու տաղերը՝ «Երկինքն ի յերկիրս...» և «Հաւուն, [հաւուն] արթնացեալ...»։

Մեր կարծիքով, այս միասնական բեկորները մնացուկներ են հեղինակի ունեցած անձնական ժողովածուից։

Նարեկացու այդ անձնական ժողովածուի գոյության մասին են վկայում նաև Գրիգոր Խլաթեցու խմբագրած Հայսմավուրքում Նարեկացու գրական ժառանգությանը վերաբերող այն տողերը, ուր ասվում է, թե նա գրել է «գանձեր յաւագիցն տէրունական տօնից և սրբոց մարտիրոսաց, մեղեդիւք և տաղերովք, անոյշ եղանակաւ և ձայնիւ»[23]։ Այս հատվածն ինքնին ապացուցում է, որ նշված ստեղծագործություններն սկզբնապես դիտվել են իբրև մի ամբողջություն՝ ստեղծված հեղինակի կողմից, եկեղեցական հիմնական տոների համար, համապատասխան երաժշտությամբ։

Ուշադրության է արժանի նաև մի այլ փաստ. Գանձարան-ժողովածուներից երևում է, որ ընդհանրապես մի գանձի համար գրվել են մեկից ավելի տաղեր, մեղեդիներ, հորդորակներ։ Նույն բանը նկատվում է Նարեկացու մոտ։ Օրինակ, № 7785 ձեռագրում Ղազարոսի Հարության, Զատկի, Համբարձման ու Եկեղեցու տոներին նվիրված գանձերից յուրաքանչյուրին կցված են Նարեկացու մի քանի տաղեր։ Բնական կլիներ մտածել, որ վերջիններս էլ Նարեկացու երբեմնի գանձարանային ժողովածուի բեկորներից են։

Այսպիսով, բերված օրինակները օգնում են ընդունելու Նարեկացու կողմից ստեղծված Գանձարան-ժողովածուի գոյության հավանականությունը։ Ժամանակի ընթացքում է միայն, որ Գանձարանների նյութերի հարստացման, ճոխացման ու փոփոխման հետևանքով խախտվում է նաև Նարեկացու գանձերի, տաղերի ու մեղեդիների միասնականությունը, նրանք աստիճանաբար հեռանում են միմյանցից՝ զուգորդվելով Նարեկացուն չպատկանող նոր նմուշների հետ։ Այդ է պատճառը, որ № 7785 ձեռագրում իրենց սկզբնական ամբողջական տեսքով պահպանված Նարեկացու հիշյալ ստեղծագործությունների կողքին պատահում են նաև հեղինակի գանձերի, տաղերի կամ մեղեդիների մի քանի նմուշներ, որոնց համապատասխան զուգահեռները Նարեկացունը չեն։

23 Գիրք որ կոչի Այսմաւուրք, Կ. Պոլիս, 1730, էջ 394։

Քանի որ Նարեկացու գանձերի, տաղերի ու մեղեդիների հարաբերության առումով բացառիկ նշանակություն ունի հատկապես № 7785 ձեռագիրը, ուստի նրանում գտնվող հեղինակի նշված ստեղծագործությունները ստորև ներկայացնում ենք առանձին ցանկով, որտեղ Նարեկացու ստեղծագործությունները հանդես են գալիս հետևյալ միավորներով.

ա) Երբ և՛ գանձերը, և՛ տաղերն ու մեղեդիները պատկանում են Նարեկացուն (2, 9, 10-րդ միավորներ):

բ) Երբ գանձերը Նարեկացունն են, իսկ տաղերը՝ ոչ (6, 11, 12, 14, 15-րդ միավորներ):

գ) Երբ տաղերն ու մեղեդիները Նարեկացունն են, իսկ գանձերը՝ ոչ (1, 3, 4, 5, 7, 8, 13, 16-րդ միավորներ):

Նարեկացու ստեղծագործությունների խորագրերն այս ցանկում բերված են գլխատառերով, մյուսներից դյուրությամբ տարբերելու նպատակով: Անխորագիր նմուշները (որոնք չեն ընդգծված) բոլորը պատկանում են Նարեկացուն:

1. Քարոզ մեծի կենսաբեր յայտնութեան տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի—Աւրհնեմք զքեզ միածին... (12ա):
ՏԵԱՌՆ ՆԵՐՍԻՍԻ ԿԱԹՈՒՂԻԿՈՍԻ[24] ՋՐԱՒՐՀՆԱՑՆ ԱՌԱՒԱՒՏԻՆ ՏԱՂ—Աւետիս մեծ խորհրդոյ... (16 ա):
2. ՔԱՐՈԶ ՉՈՐՐՈՐԴ ԱՒՈՒՐ ԾՆՆԴԵԱՆՆ ՔՐԻՍՏՈՍԻ ԱՍՏՈՒԾՈՅ—Գանձ անապական ծածկեալ մեծութիւն.... (30ա):
ՏԱՂ ՆՄԻՆ ԱՒՈՒՐ ԵՐԵԿՈՅԻ ԺԱՄՈՒՆ—էին աչոյ աչոյ... (35ա):
3. Քարոզ տեառնընդառաջին, ասացեալ Սարգիս վարդապետի—Սրբութիւն սրբութեանց... (102բ):
ՏԱՂ ՔԱՌԱՍՆԱՒՈՐԱՑ ԳԱԼՍՏԵԱՆՆ ՏԵԱՌՆ Ի ՆԱՐԵԿԷ ԱՍԱՑԵԱԼ—Մինն էին եկին... (105բ):
4. Քարոզ սրբոց Քառասնիցն, որք ի Սեբաստիա կատարեցան—Գովեալ միշտ... (148բ):
ՏԱՂ ՍՐԲՈՑ ՔԱՌԱՍՆԻՑՆ ԵՒ ԱՅԼ ՎԿԱՅԻՑՆ Ի ԳՐԻԳՈՐԷ ՆԱՐԵԿԱՑԻՈՅ ԱՍԱՑԵԱԼ—Գունդք սուրբ վկայիցն... (152ա):
5. Քարոզ Ղազարու յարութեան—զեկավար հրամանաւ... (175բ):
ԱՅԼ ՏԱՂ ՂԱԶԱՐՈՒ ՅԱՐՈՒԹԵԱՆ—Սկզբնազարդ գոյիւանայր... (181բ):
Ձայն կենդանատուն ձայնէր... (182ա):
ԱՅԼ ՏԱՂ ԳԱԼՍՏԵԱՆ Ի ՅԱՐՈՒԹԻՒՆ ՂԱԶԱՐՈՒ—էն նորոյ... (184բ):
6. ՔԱՐՈԶ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑԻՈՅ ԱՍԱՑԵԱԼ Ի ՍՈՒՐԲ ՅՈՎՀԱՆՆԷՍ ՄԿՐՏԻՉՆ—Իսկապէս անբակերն... (240բ):
Տաղ գլխատմանն Յովհաննու Մկրտչին—Ի յանապատէ լերանց... (246բ):
7. Քարոզ յարութեան և մեծի զատկին—Յամենախնամ սիրոյ... (285ա):
Սեաւ եմ գեղեցիկ... (292ա):
ԱՅԼ ՏԱՂ ՅԱՐՈՒԹԵԱՆ—Անուն անեղին... (292բ):
ԱՅԼ ՏԱՂ ՅԱՐՈՒԹԵԱՆ ՔՐԻՍՏՈՍԻ ԱՍՏՈՒԾՈՅ—Սէր յառաւաւտէ... (294ա):

24 Տր. Նարեկացու այս տաղը ձեռագրերում երբեմն ներկայացվում է Ներսես Շնորհալու անունով:

8. Քարոզ համբարձմանն Քրիստոսի, ասացեալ Սարգիս վարդապետի—*Սրբութիւն սրբութեանց... (300բ):*
 ՏԱՂ ՀԱՄԲԱՐՁՄԱՆՆ ՔՐԻՍՏՈՍԻ ԱՍՏՈՒԾՈՅ, ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑՒՈՅ ԱՍԱՑԵԱԼ—*Էն է միշտ... (305բ):*
 ԱՅԼ ՏԱՂ ՀԱՄԲԱՐՁՄԱՆՆ ՔՐԻՍՏՈՍԻ ԱՍՏՈՒԾՈՅ—*Էն է ինքն էին... (307բ):*
9. ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑՒՈՅ ԱՍԱՑԵԱԼ ՔԱՐՈԶ Ի ԳԱԼՈՒՍՏ ՍՈՒՐԲ ՀՈԳՒՈՅՆ—*Գանձ լուսոյ... (312բ):*
 ՏԱՂ ԳԱԼՍՏԵԱՆ ՍՈՒՐԲ ՀՈԳՒՈՅՆ Ի ՎԵՐՆԱՏՈՒՆՆ—*Յանկարծահրնչեաց հայրաշարժ բղխումն... (316ա):*
10. ՔԱՐՈԶ ԵԿԵՂԵՑՒՈՅ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑՒՈՅ ԱՍԱՑԵԱԼ—*Գանձ բաղձալի... (332ա):*
 ԿԱՐԳ ԵԿԵՂԵՑՒՈՅ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑՒՈՅ ԱՍԱՑԵԱԼ—*Երկինքն ի յերկիրս... (336ա):*
 *Հաւուն [հաւուն] արթընացեալ... (336բ):*
11. ՔԱՐՈԶ ՍՐԲՈՅՆ ԳՐԻԳՈՐԻ ԼՈՒՍԱՒՈՐՉԻՆ—*Գերահրաշ ցնծութեամբ... (339բ):*
 Տաղ սրբոյն Գրիգորի Լուսաւորչին Հայոց—*Որդիք գերութեան... (344ա):*
12. ՔԱՐՈԶ ՎԱՐԴԱՎԱՌԻ ԵՐՐՈՐԴ ԱՒՈՒՐՆ Ի ԳՐԻԳՈՐԷ ՆԱՐԵԿԱՑՒՈՅ—*Գանձ անպատում... (370ա):*
 Այլ տաղ Վարդավառին Երրորդ աւուրն—*Այսաւր նորահրաշ... (373բ):*
13. Քարոզ եկեղեցւոյ—*Ուրախ լեր հարսնացեալդ... (390ա):*
 ԳՈՎԵՍՏ ԵԿԵՂԵՑՒՈՅ ՍՐԲՈՅ ՇՈՂԱԿԱԹԻՆ—*Երգ զարմանանիշ... (393ա):*
 ԱՅԼ ՄԵՂԵԴԻ ԵԿԵՂԵՑՒՈՅ ՍՐԲՈՅ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑՒՈՅ ԱՍԱՑԵԱԼ Է—*Յառաջ քան շարժիլն... (396բ):*
14. ԱՅԼ ՔԱՐՈԶ ՓՈԽՄԱՆ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑՒՈՅ ԱՐԱՐԵԱԼ—*Գանձ անապական.. (406ա):*
 Այլ տաղ Աստուածածնին երկրորդ աւուրն—*Նոր քերովբէ... (410ա):*
15. ՔԱՐՈԶ ՍՐԲՈՅ ԽԱՉԻՆ ԿԵՆԱՐԱՐԻՆ ՔՐԻՍՏՈՍԻ ԱՍՏՈՒԾՈՅ ՏԵԱՌՆ ՄԵՐՈՅ, ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑՒՈՅ ԱՍԱՑԵԱԼ, ԱՌԱՋԻ ԱՒՈՒՐՆ—*Գանձ անքննին... (430ա):*
 Տաղ սուրբ խաչին Ներսիսի կաթուղիկոսի ասացեալ—*Միակն ի միոյն... (432բ):*
16. Քարոզ Վարագայ խաչին, Գէորգայ վարդապետի—*Գաւազան ուժոյ... (458ա).*
 ԱՅԼ ՄԵՂԵԴԻ Ի ՆՈՅՆ ԽՈՐՀՈՒՐԴ ԽԱՉԻՆ ՔՐԻՍՏՈՍԻ ԱՍՏՈՒԾՈՅ—*Ես ձայն զարիծուն... (463ա):*

*Նարեկացու գանձ—քարոզների, տաղերի ու մեղեդիների միասնությունը հաստատող Հայսմավուրքի վերևում բերված տողերը կարևոր են նաև այլ տեսակետից: Օրինակ, «տէրունական տօնից և սրբոց մարտիրոսաց» հատվածը հավաստում է Նարեկացու նշված ստեղծագործություններից վերևում նկատված այն փաստը, որ դրանք վերաբերում են եկեղեցական բոլոր տոներին՝ բնորոշ ընդհանրապես Գանձարանների տոնական դասավորությանը: Այսպիսով, վեր-*

ջինիս սկզբնավորումը նույնպես կապվում է Նարեկացու անվան հետ ու թեև գանձերի, տաղերի ու մեղեդիների որոշ նմուշներ Նարեկացու մոտ այժմ պակասում են, սակայն, պետք ենթադրել, որ նախկինում նրանց տոնական շարքը յուրովի լրիվ է եղել:

Ուշագրավ է նաև Հայսմավուրքի նշված պարբերության վերջին հատվածը, որը վերաբերում է Նարեկացու գանձերի, տաղերի ու մեղեդիների եղանակավորմանը: «Անուշ եղանակաւ և ձայնիւ» բառերը վկայում են, որ այդ նորաստեղծ երկերի երաժշտության հորինումն էլ Նարեկացունն է: Այդ մասին, ինչպես արդեն նշվել է, հեղինակն ինքն ակնարկել է իր գանձերից մեկում:

Ավարտելով մեր ամփոփ խոսքը, կարող ենք ասել, որ Գրիգոր Նարեկացու դերը մեծ է ոչ միայն իբրև գանձերի առաջին հեղինակի, այլև իբրև գանձերի, տաղերի ու մեղեդիների միասնական ամբողջության ստեղծողի:


А. М. КЕШКЕРЯН

## ГАНДЗЫ ГРИГОРА НАРЕКАЦИ И ПРОИСХОЖДЕНИЕ ГАНДЗАРАНА

Начиная с XIII века, в армянской средневековой литературе широко распространяются *Гандзараны* (сборники духовных песнопений), содержащие *гандзы* и *таги* (виды духовных песнопений). В статье рассматриваются в основном Гандзараны раннего периода, до XIV века.

Первым автором гандзов, собранных в Гандзаранах, считается известный поэт X века Григор Нарекаци. До сих пор армянской филологии были известны шесть его гандзов. В рукописях Матенадарана обнаружены ещё три. Исследуя вопрос о связи гандзов и тагов Нарекаци, как первого автора гандзов, в статье, исходя из ряда данных и доказательств, выражается мысль о том, что у Нарекаци гандзы и таги выступали совместно. Он же сочинял музыку к ним. Всё это служило основой для составления Гандзаранов.



A. M. KEUCHKERIAN

## LES GANDZ DE GREGOIRE DE NAREK ET L'ORIGINE DES GANDZARANS

A partir du XIII siècle les *Gandzarans* (recueils de chants religieux) comprenant des *gandz* et des *taghs* (divers chants religieux) furent largement répandus dans la littérature arménienne médiévale.

L' article concerne surtout les Gandzarans du haut Moyen Age (avant le XIV siècle).

Grégoire de Narek, célèbre poète du X siècle, passe pour être le premier auteur des gandz. Jusqu'à présent six de ses gandz étaient connus de la philologie arménienne. Trois autres ont été découverts dans les manuscrits du Maténadaran. Etudiant la question du rapport entre les gandz et les taghs de Grégoire de Narek, en tant que premier auteur des gandz, l'auteur de l'article, se basant sur différentes données et preuves, émet l'opinion que chez Grégoire de Narek les gandz et les taghs se présentaient ensemble, étaient mis en musique par l'auteur-même et servaient de base pour la rédaction du Gandzaran.